գրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի փետրվարի 9-ի համարում։

Ավելի մոտ կանգնել կոլտնտեսային-սովխոզային արտադրության վճռական տեղամասերին, «Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի փետրվարի 5-ի համարում։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի ԴԻՄՈՒՄԸ բոլոր ընտրողներին, բանվորներին և բանվորուհիներին, գյուղացիներին և գեղջկուհիներին, սովետական ինտելիգենցիային, Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի ռազմիկներին, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի փետրվարի 11-ի համարում։

Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Отдел Пропаганды и агитации ЦК КП Армении
№ 5 1954 г.
БЛОКНОТ АГИТАТОРА

ՎՖ 09341 Պատվեր 239 Տիրաժ 8250

Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան
Կնունյանցի № 8, 1954 թ., գինը 50 կոպ.։

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք։

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

ОБЯЗАТЕЛЬНЫЙ
ЭКЗЕМПЛЯР

№ 6 ՄԱՐՏ 1954

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս 2—52—78։*


---

# ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ ՍԻՍՏԵՄԱՏԻԿԱԲԱՐ ՄԱՍՍԱՅԱԿԱՆԱՑՆԵԼ ԱՌԱՋԱՎՈՐ ՓՈՐՁԸ

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը լայն միջոցառումներ են ձեռնարկել գյուղատնտեսության բոլոր ճյուղերի արագ զարգացման վերելքն ապահովելու, երկրում պարենային մթերքների լիակատար առատություն ստեղծելու համար։

ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումը և երկրում հացահատիկի արտադրությունն ավելացնելու մասին պարտիայի Կենտրոնական Կոմիտեի պլենումի օրերս ընդունած որոշումը հանդիսանում են մարտական ծրագիր՝ սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման պրակտիկ խնդիրները հաջողությամբ լուծելու գործում։

Որպեսզի գյուղատնտեսության հետագա զարգացման վերաբերյալ պարտիայի և կառավարության կողմից առաջադրվող խնդիրները հաջողությամբ լուծվեն, անհրա-



4617-54



ժեշտ է կոլտնտեսություններում, սովխոզներում, ՄՏԿ-ներում լայնորեն մասսայականացնել և արմատավորել առաջավոր փորձը։

Աշխատանքի պրակտիկան ցույց է տալիս, որ չի կարելի գյուղատնտեսության մեջ հասնել լուրջ հաջողությունների, առանց ընդհանրացնելու և տարածելու առաջավոր փորձը։ Միշտ էլ առաջավոր փորձի տարածման ու արմատավորման շնորհիվ կրկնապատկվել ու եռապատկվել են կոլտնտեսությունների եկամուտները, հանդես են եկել գյուղատնտեսական աշխատանքի նոր վարպետներ։

Առաջավոր փորձի տարածման և արմատավորման միջոցով վիթխարի հաջողությունների են հասել Շահումյանի շրջանի կոլտնտեսությունները։ 1949 թվականի համեմատությամբ, 1953 թվականին շրջանում մոտ 4 անգամ ավելացել է անասունների կաթնատվությունը և մոտ 6 անգամ՝ անասնաբուծությունից ստացված եկամուտները։ Նույն շրջանի Շենգավիթ գյուղի Կալինինի անվան կոլտնտեսության կովաբուծական ֆերմայի վարիչ, ագիտատոր Մ. Ավետիսյանը պատմում է, թե ինչպես իրենց մոտ արմատավորելով Կոստրոմայի մարզի «Կարա-



վաևո» սովխոզի անասնապահների առաջավոր փորձը անասունների կերակրման, խնամքի ու պահպանման վերաբերյալ, հասան խոշոր հաջողությունների՝ կովերի կաթնատվության բարձրացման գործում։ Կոլտնտեսությունում առաջավոր փորձի արմատավորման հենց առաջին տարում,— ասում է նա,— կովերի միջին կաթնատվությունը 488 լիտրից բարձրացավ 1.648 լիտրի, երկրորդ տարում՝ 3.080 լիտրի, երրորդ տարում՝ 3.395 լիտրի։ Առաջավոր փորձի արմատավորմանը նախորդեց ագիտկոլեկտիվի կողմից կազմակերպված պատկերավոր և նպատակասլաց ագիտացիան։ Ագիտատորները և հատկապես գյուղատնտեսական գիտությունների թեկնածու ընկ. Ա. Երիցյանը անասնապահներին պատմեցին առաջավորների աշխատանքի այն ձևերի ու մեթոդների մասին, որոնց միջոցով նրանք ձեռք են բերել անասունների բարձր մթերատվություն։

Պարտիայի և կառավարության ձեռնարկած միջոցառումները գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ հաջողությամբ կենսագործելու համար անհրաժեշտ է, որ ագիտատորները բարձրացնեն կոլտնտեսականների, մեքենա-տրակտորային կայանների մեխանիզատորների աշխատանքային

ակտիվությունն ու նախաձեռնությունը, ծավալելով նրանց մեջ գործարար սոցիալիստական մրցություն։ Այդ գործում աշխատանքի ուսանելի փորձ ունեն Կիրովականի շրջանի Սարահարթ գյուղի Չկալովի անվան կոլտնտեսության ագիտատորները։ Տեղեկանալով, որ եղբայրական Վրաստանի Քարելի շրջանի Լեթեթիի կոլտնտեսականները շաքարի ճակնդեղի ռեկորդային բերք են ստացել, նրանք հանգամանորեն ուսումնասիրեցին լեթեթցիների առաջավոր փորձը, կոլտնտեսականներին մանրամասնորեն պարզաբանեցին այն, այնուհետև օգնեցին նրանց սոցիալիստական մրցության մեջ մտնելու լեթեթցիների հետ։ Արդյունքը եղավ այն, որ 1953 թվականի գյուղատնտեսական տարում սարահարթցիները նույնպես ճակնդեղի բարձր բերք ստացան։ Առանձին օղակներ, ինչպես, օրինակ, Արշալույս Վարդերեսյանի օղակը, ճակնդեղի յուրաքանչյուր հեկտարից ստացել են ավելի քան 500 ցենտներ բերք։

«Մեր աշխատանքներին,— ասում է օղակավարուհի Ա. Վարդերեսյանը,— մեծ չափով նպաստեց եղբայրական Վրաստանի Քարելի շրջանի Լեթեթիի կոլտնտեսության հետ ծավալված սոցիալիստական մրցու-



թյունը։ Մեր մրցակից բարեկամները շաքարի ճակնդեղի բարձր բերք աճեցնելու մեծ փորձ ունեն։ Նրանց դելեգացիան եղավ մեզ մոտ և հաղորդեց իրենց փորձը։ Մեր ճակնդեղագործները, որոնց թվում և ես, գնացինք Լեթեթի, այնտեղ շատ բան սովորեցինք»։

Կոլտնտեսականների և գյուղատնտեսության ֆրոնտի մյուս աշխատողների աշխատանքային ակտիվության ու նախաձեռնության մասին ուսանելի շատ օրինակներ կան, որոնք արդյունք են ագիտացիոն-քաղաքական աշխատանքի ճիշտ կազմակերպման։

Այժմ, գյուղում կատարվող ագիտացիոն-քաղաքական աշխատանքի հիմնական բովանդակությունը պետք է լինի ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի, ինչպես նաև վերջերս տեղի ունեցած պլենումի որոշումների և գյուղատնտեսության զարգացման մասին պարտիայի ու կառավարության մյուս որոշումների լայն մասսայականացումը։ Մեր երկրի համար կենսական նշանակություն ունեցող այդ պատմական որոշումները պետք է հանգամանորեն, ճշմարտացի ու պատկերավոր կերպով պարզաբանել կոլտնտեսային լայն մասսաներին, մեքենա-տրակտորային կայանների և սովխոզների աշխատողներին, մոբիլիզաց-

նելով նրանց պարտիայի և կառավարության կողմից առաջադրվող խնդիրները անթերի կատարելու համար։

Ագիտացիոն աշխատանքի նման ուսանելի փորձ ունի Ալավերդու շրջանի «Զեյթուն» սովխոզի ագիտկոլեկտիվը, որը միշտ օգնում է ագիտատորներին ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշման մասին հետաքրքիր ու բովանդակալից զրույցներ կազմակերպելու ունկնդիրների համար։ Այստեղ մի շարք ագիտատորներ, ինչպես, օրինակ Վ. Հարությունյանը, Բ. Վարդանյանը, Ն. Նամազովը, Հ. Կարապետյանը և ուրիշներ, օգտագործելով քաղաքական ագիտացիայի արդյունավետ ձևերից մեկը՝ զրույցը, սիստեմատիկաբար ունկնդիրներին պարզաբանում են ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման մասին ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումը և երկրում հացահատիկի արտադրության հետագա ավելացման, խոպան ու խամ հողերի յուրացման մասին վերջերս ընդունված որոշումը։ Նրանք հանգամանորեն ունկնդիրներին մեկնաբանում են պարտիայի և կառավարության այն խոշոր միջոցառումները, որ ընդունված են գյուղատնտեսության արագ վերելքն ու բազմակողմանի զարգացումն



ապահովելու համար։ Միաժամանակ այդ զրույցների ժամանակ ելույթ են ունենում նաև ունկնդիրները, որով նպաստավոր պայմաններ է ստեղծվում ագիտացիոն նյութը ավելի պարզ ու մատչելի դարձնելու համար։

Քաղաքական սուր, ճշմարտացի ագիտացիան միշտ էլ մեծ ուժ է եղել և օգնել է պարտիական ու սովետական կազմակերպություններին մոբիլիզացնելու աշխատավորության ուժերը երկրի առջև դրված խնդիրները ժամանակին և պատվով կատարելու համար։ Ուստի անհրաժեշտ է, որ մեր ագիտատորները ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումը և գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ պարտիայի ու կառավարության մյուս որոշումները մասսայականացնեն սիստեմատիկաբար, ամեն օր և դիֆերենցված կերպով։ Հարկավոր է այդ պատմական որոշումների կենսագործման նպատակին ամբողջությամբ ի նպաստ դնել գյուղում կատարվող քաղաքական աշխատանքը, հիշելով, որ քաղաքական ագիտացիան պարտիական աշխատանքի կարևորագույն մասն է, որ այն պետք է լինի գաղափարապես հագեցված, խորը, բազմակողմանի և նպատակասլաց։

---

ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԵՎ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԻ ՈՒՂԻՈՎ

(Ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական երկրների 1953 թվականի ժողովրդատնտեսական պլանների կատարման արդյունքների շուրջը)

Ի. ԴՈՒԴԻՆՍԿԻ

Ժողովրդա-դեմոկրատական հասարակական և պետական կարգը ծավալեց աշխատավորների ստեղծագործական եռանդը, որ կաշկանդված էր կալվածատերերի ու կապիտալիստների տիրապետության օրոք, զարգացման լայն ասպարեզ բացեց արտադրողական ուժերի համար։ Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում սոցիալիստական արդյունաբերության տարեցտարի շարունակվող աճը, քաղաքի և գյուղի աշխատավորների կենսամակարդակի անընդհատ վերելքը հետևանք է այն բանի, որ այդ երկրների էկոնոմիկան, Սովետական Միության



էկոնոմիկայի պես, զարգանում է հօգուտ հասարակության նյութական ու կուլտուրական պահանջմունքների առավել լրիվ բավարարման։

## ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՎԵՐԸՆԹԱՑ ԳԻԾԸ

Միայն անցյալ տարի արդյունաբերական արտադրության ծավալը 1952 թվականի համեմատությամբ Լեհաստանում ավելացավ 17,5 տոկոսով, Չեխոսլովակիայում՝ 10, Հունգարիայում՝ 11,8, Ռումինիայում՝ 14,4, Բուլղարիայում՝ 12, Ալբանիայում՝ 22 տոկոսով։

Նույն այդ ժամանակ կապիտալիստական երկրներում ուժեղանում էին հերթական տնտեսական ճգնաժամի նշանները։ Բուրժուական մամուլը այլևս չի կարող թաքցնել այն փաստերը, որ էկոնոմիկայի խաղաղ ճյուղերում ամենուրեք կծկվում է արտադրությունը, աճում է գործազրկությունը, ուժեղանում է ժողովրդական մասսաների առանց այն էլ սոսկալի աղքատությունը։

Ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական երկրներում արդյունաբերական արտադրության ծավալը ներկայումս ավելի քան երեք անգամ գերազանցում է նախապա-

տերազմյան մակարդակը։ Առանձնապես հաջողությամբ է զարգանում ծանր արդյունաբերությունը՝ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի սոցիալիստական վերակառուցման հիմքը։ Ազատագրված ժողովուրդներն իրենց անձնվեր աշխատանքով, Սովետական Միության եղբայրական օգնությամբ, կարողացան պատմական կարճ ժամանակամիջոցում վերացնել արդյունաբերական հետամնացությունը։

Ահա, օրինակ, Լեհաստանը։ Կապիտալիստական կարգերի օրոք, արդյունաբերական արտադրության չափերով նա գրավում էր վերջին տեղերից մեկը Եվրոպայում։ Ներկայումս արդյունաբերական զարգացման մակարդակով ժողովրդական Լեհաստանը Եվրոպայում բռնում է հինգերորդ տեղը, հասնելով մի այնպիսի երկրի, ինչպիսին է Իտալիան։ Լեհաստանում ներկայումս բնակչության յուրաքանչյուր շնչին թողարկվում է համարյա այնքան արտադրանք, որքան Ֆրանսիայում։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրների մեծ մասն ունի իր ածխա-մետալուրգիական և էներգետիկ բազան, իր հայրենական մեքենաշինությունը։ Ընդորում կարևոր է նշել հետևյալ հանգամանքը։ Այդ երկրներից յու-



րաքանչյուրը զարգացնելով իր սոցիալիստական ինդուստրիան, հաշվի է առնում, որ ինքը նոր հասարակությունը կառուցում է ոչ թե միայնակ, այլ՝ Սովետական Միության և դեմոկրատական լագերի մյուս երկրների հետ տնտեսական սերտ համագործակցությամբ։

Վերջին տարիներս զգալի քանակությամբ դոմենյան և մարտենյան նոր հնոցների գործարկումը Լեհաստանի աշխատավորներին հնարավորություն տվեց 1953 թվականին պողպատի ձուլումը հասցնելու 3,5 միլիոն տոննայի՝ նախապատերազմյան ամենալավ տարում ձուլված 1,4 միլիոն տոննայի դիմաց։ Չեխոսլովակիայում անցյալ տարի արտադրվեց 4,3 միլիոն տոննա պողպատ, այսինքն՝ երկու անգամ շատ, քան 1937 թվականին։ Անցյալ տարի առաջին անգամ սկսեց հայրենական պողպատ արտադրել Բուլղարիան, որտեղ շարք մտավ Վ. Ի. Լենինի անվան մետալուրգիական գործարանը։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում անընդհատ աճում է վառելիքի, հանքանյութի և արդյունաբերական այլ հումքի արտադրությունը։ Պատերազմից առաջ, ամենալավ տարում Ռումինիայում նավթի հա-

նույթը չէր անցնում 8,6 միլիոն տոննայից։ Ռումինիայի նավթագործները հետախուզության և հանույթի առաջավոր մեթոդների արմատավորման շնորհիվ 1953 թվականին երկրին տվեցին 9,3 միլիոն տոննա նավթ։ Լեհական հանքագործները անցյալ տարի տվեցին 89 միլիոն տոննա ածուխ։ Համեմատության համար հիշենք, որ 1938 թվականին Լեհաստանում արտադրվել է 38 միլիոն տոննա ածուխ։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում անշեղորեն աճում է էներգետիկ բազան։ Անցած տարին նշանավորվեց մի շարք նոր էլեկտրակայանների գործարկումով՝ Հունգարիայում, Լեհաստանում, Բուլղարիայում, Ռումինիայում։ 1953 թվականին Չեխոսլովակիայում, օրինակ, արտադրվեց 12,5 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, այսինքն՝ երեք անգամ շատ, քան արտադրվում էր բուրժուական կարգերի օրոք։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրներն այժմ ունեն զարգացած մեքենաշինական արդյունաբերություն։ Օրինակ՝ Ռումինիան, որ անցյալում համարյա մեքենաներ չէր արտադրում, միայն անցյալ տարի կազմակերպեց ստորերկրյա էլեկտրաքարշերի, կոմպրեսորների, նավթային, տեքստիլ արդյու-



նաբերության համար և արդյունաբերության այլ ճյուղերի համար նոր տիպի սարքավորումների արտադրությունը։ Ժողովրդական Ռումինիայում հաջողությամբ զարգանում է տրակտորների, առանցքակալների, զանազան դազգահների, գյուղատնտեսական մեքենաների արտադրությունը։ Լեհաստանի մեքենաշինարարները անցյալ տարի սկսեցին մեքենաների ու մեխանիզմների համարյա հարյուր նոր տիպերի սերիական արտադրությունը։ Չեխոսլովակիայի աշխատավորները անցած հինգ տարում իրենց մեքենաշինության արտադրանքն ավելացրին մոտավորապես երեք և կես անգամ։ 1953 թվականին շատ նոր մեքենաներ ու մեխանիզմներ սկսեցին արտադրել Հունգարիայի և Բուլղարիայի աշխատավորները։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում ծանր արդյունաբերության զարգացումը ուղեկցում է ժողովրդական սպառման առարկաների արտադրության աճը։ 1953 թվականին այդ երկրների թեթև և սննդի արդյունաբերությունը շատ ավելի արտադրանք տվեց, քան նախապատերազմյան շրջանում։ Շարք են մտնում տեքստիլի նոր կոմբինատներ, կոշիկի ֆաբրիկաներ, սննդարդյունաբերության ձեռնարկություններ։

## ԳՅՈՒՂԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Կոմունիստական և բանվորական պարտիաները, ժողովրդական իշխանությունը իրենց ջանքերն ուղղում են գյուղի արտադրողական ուժերի զարգացմանը, աշխատավոր գյուղացիության՝ սոցիալիզմի կառուցման գործում բանվոր դասակարգի այդ հավատարիմ դաշնակցի կյանքի պայմանների բարելավմանը։ Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում ստեղծվել են հարյուրավոր մեքենա-տրակտորային կայաններ։ 1953 թվականին միայն Լեհաստանում գործում էին 401 մեքենա-տրակտորային կայաններ, որտեղ երկրի դաշտերում աշխատում էին 45 հազար տրակտորներ (15 ուժանոցի փոխադրած)։ 1953 թվականին Չեխոսլովակիայում կային 255 մեքենա-տրակտորային կայաններ, որոնք գյուղատնտեսական կոոպերատիվներում կատարում էին բոլոր դաշտային աշխատանքների 44 տոկոսը։ Երկրի գյուղատնտեսության մեջ տրակտորների թիվը հասնում էր մոտ 19 հազարի։ Պատերազմից առաջ Բուլղարիայում, ինչպես հայտնի է, հողը մշակում էին արորով և անգամ՝ ձեռքի բրիչով։ 1953 թվականին ռեսպուբլիկայի



դաշտերում աշխատում էին 14.985 տրակտոր և ավելի քան 1.700 կոմբայն։

Սեփական փորձով համոզվելով այն առավելությունների մեջ, որ ունեն խոշոր, կոլեկտիվ տնտեսությունները մանր, անհատական տնտեսությունների նկատմամբ՝ աշխատավոր գյուղացիությունը ավելի ու ավելի վճռականորեն է կանգնում արտադրական միավորման ուղու վրա։ Արդեն այժմ սոցիալիստական սեկտորը ամուր դիրքեր է նվաճել գյուղատնտեսության մեջ։ 1953 թվականին Բուլղարիայում կոոպերատիվ և պետական տնտեսությունները միավորում էին երկրի վարելահողերի ավելի քան 60 տոկոսը։ Չեխոսլովակիայում երկրի գյուղերի 58 տոկոսն ունի արտադրական կոոպերատիվներ։ Լեհաստանում սոցիալիստական սեկտորը (պետական տնտեսություններ և արտադրական կոոպերատիվներ) ընդգրկում է վարելահողերի մոտ 26 տոկոսը, Հունգարիայում՝ 32 տոկոսը։

Գյուղատնտեսական արտադրության մեքենայացումը, ժամանակակից ագրոտեխնիկայի կիրառումը հնարավորություն տվեցին զգալիորեն բարձրացնել հացահատիկային ու տեխնիկական կուլտուրաների բերքա-

տվությունը, ավելացնել գյուղատնտեսական արտադրության մթերատվությունը։

Ժողովրդական իշխանությունն առանձին հոգատարություն է ցուցաբերում, որպեսզի ուժեղացվի գյուղացու շահագրգռվածությունը գյուղատնտեսության արդյունավետության բարձրացման գործում։ Այդ նպատակով 1953 թվականին ժողովրդական դեմոկրատիայի երկրներում զգալիորեն իջեցվեցին գյուղացիների կողմից գյուղատնտեսական մթերքների պարտադիր հանձնումների նորմաները, ավելացվեցին պետական մթերման գները, զիջվեցին անհատական գյուղացիական տնտեսությունների և գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվների պետությանն ունեցած պարտքերը։ Այս միջոցառումները է՛լ ավելի են ամրապնդում բանվորների և գյուղացիների դաշինքը՝ ժողովրդա-դեմոկրատական կարգի անխախտ հիմքը։

## ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐՕՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Ի տարբերություն կապիտալիստական երկրների, որտեղ ազգային եկամտի վիթխարի մասը յուրացնում են ֆինանսական կապիտալի մի բուռ մագնատներ, ժողովրդական դեմոկրատիայի երկրներում արա-



գորեն աճող ազգային եկամտի մոտ 3/4-ը հատկացվում է աշխատավորների նյութական ու հոգևոր պահանջմունքների բավարարմանը։ Ազգային եկամտի մնացած մասը օգտագործվում է արտադրության ընդլայնման և հասարակական ու պետական այլ կարիքների համար։ Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում վաղուց վերացված է գործազրկությունը։ Այնտեղ չկան այլևս քաղցած ու անօթևան մարդիկ՝ քաղաքներում, «ավելորդ» մարդիկ՝ գյուղերում։ Յուրաքանչյուր ոք վայելում է աշխատանքի, հանգստի և կրթության՝ ռեալ կերպով ապահովված իրավունք։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրների բնակչությունը ներկայումս զգալիորեն ավելի շատ արդյունաբերական և պարենային ապրանքներ է գնում, քան նախապատերազմյան շրջանում։

Կոմունիստական և բանվորական պարտիաները, ժողովրդական իշխանությունը լուրջ միջոցառումներ են նշել գյուղատնտեսության, սննդի և թեթև արդյունաբերության ավելի արագ զարգացման համար։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրների արդյունաբերական զարգացման ներկա մակարդակը այդ երկրներին հնարավորություն



4617-54



է տալիս հզոր տեխնիկական բազա ստեղծել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համար։ Դրանով իսկ ապահովվում է ժողովրդի բարեկեցության արագ վերելքի այն վիթխարի ծրագրի կենսագործումը, որ մշակել են կոմունիստական և բանվորական պարտիաները։ Այդ ծրագիրը, որ այժմ մեծ խանդավառությամբ կենսագործվում է աշխատավորների կողմից, նախատեսում է առաջին հերթին կարգավորել կապիտալ ներդրումները և ապահովել գյուղատնտեսության, թեթև ու սննդի արդյունաբերության արագ զարգացումը։ Էական չափով ավելացվում են բնակարանային շինարարության համար կատարվող կապիտալ ներդրումները։

Ժողովրդական իշխանությունը առանձնահատուկ հոգատարություն է ցուցաբերում, որպեսզի զգալիորեն բարելավվի աշխատավոր գյուղացիների նյութական դրությունը, ավելի նպաստավոր պայմաններ ստեղծի նրանց համար՝ իրենց տնտեսությունը բարձրացնելու, գյուղատնտեսական արտադրությունը զարգացնելու գործում։

Կոմունիստական և բանվորական պարտիաների, ժողովրդական իշխանության քաղաքականությունը ամենաջերմ պաշտպանություն է գտնում աշխատավորների բոլոր խա-



վերի կողմից։ Ժողովրդի բարեկեցության աճման մշակված ծրագրի կենսագործումը է՛լ ավելի կամրապնդի պետական կարգն այդ երկրներում։

Միասնական ու հզոր սոցիալիստական լագերի ժողովուրդների եղբայրական ընտանիքը վստահությամբ է նայում իր ապագային։ Վաղվա օրը ազատ ժողովուրդներին կըբերի նոր հաղթանակներ ազատության ու երջանկության համար, ամբողջ աշխարհի խաղաղության համար մղվող պայքարում։

═══

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Ս. ԱՎԵՏԻՍՅԱՆ

Երևանի մահուդի ֆաբրիկայի մանող ցեխում աշխույժ և հետաքրքիր են անցնում ագիտացիոն զրույցները։ Այստեղ ագիտատոր է ինժեներ Հ. Սարգսյանը։ Նա ագիտացիոն զրույցների ընթացքում խելացի ու մտածված կերպով է օգտագործում տեղական փաստերը, թվերը և մանավանդ շատ հաջող կերպով բացատրում է առանձին բանվորների՝ ցեխի, ֆաբրիկայի առջև դրված կոնկրետ խնդիրներն ու նշում այդ խնդիրներն անթերի կատարելու միջոցները։

Ահա աշխատանքի արտադրողականության բարձրացման մասին վերջերս նրա անցկացրած զրույցի համառոտ բովանդակությունը։ Ագիտատորն ունկնդիրներին հանգամանորեն պարզաբանում է, որ Կոմունիստական պարտիան խոշոր նշանակություն է տալիս աշ-



խատանքի արտադրողականության բարձրացմանը, որպես կարևորագույն միջոց սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու գործում։

— Աշխատանքի արտադրողականության բարձրացումը,— ասաց նա,— սոցիալիստական արտադրության զարգացման կարևորագույն լծակներից մեկն է։ Մեր երկրի աշխատավորները, լայնորեն օգտագործելով հայրենական առաջավոր տեխնիկան, ծավալելով համաժողովրդական ստեղծարար սոցիալիստական մրցություն, անընդհատ բարձրացնելով իրենց տեխնիկական ու կուլտուրական մակարդակը և արմատավորելով աշխատանքի առաջավոր մեթոդներ, աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում ձեռք են բերել մեծ հաջողություններ։ Բավական է նշել, որ 1940 թվականից մինչև 1951 թվականը ՍՍՌՄ-ում աշխատանքի արտադրողականությունն արդյունաբերության մեջ աճել է 50 տոկոսով, ընդ որում արդյունաբերական արտադրանքի 70 տոկոսը ստացվել է ի հաշիվ աշխատանքի արտադրողականության բարձրացման։

Ընկեր Գ. Մ. Մալենկովը պարտիայի 19-րդ համագումարին տված իր հաշվետու զեկուցման մեջ նշեց, որ «ՍՍՌՄ-ում աշխատանքի

արտադրողականության արագ աճը ամենից առաջ ժողովրդական տնտեսության մեջ նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիական պրոցեսների լայն արմատավորման արդյունք է, արտադրության մեքենայացման և էլեկտրիֆիկացման, հատկապես աշխատատար և ծանր աշխատանքների մեքենայացման արդյունք, ինչպես նաև աշխատանքի լավագույն կազմակերպման, աշխատավորների հանրակրթական և կուլտուրական մակարդակի աճի ու նրանց արտադրական որակավորման բարձրացման արդյունք»։

Անսահմանափակ է մեր երկրում աշխատանքի արտադրողականության բարձրացման հնարավորությունը,— ասում է ագիտատորը։ Մեզ մոտ բանվորներն անմիջականորեն շահագրգռված են աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ, որովհետև դրանով աճում է մեր ժողովրդական տնտեսությունը, ամրապնդվում է մեր Հայրենիքի հզորությունը, բարձրանում է հենց իրենց, աշխատավորների կենսամակարդակը։

Այնուհետև ագիտատորը հանգամանորեն պատմեց, թե իրենց ֆաբրիկայի կոլեկտիվը ինչպես է կենսագործում ՍՍՌՄ զարգացման 1951—55 թվականների հինգերորդ հնգամյա



պլանի վերաբերյալ ՍՄԿԿ 19-րդ համագումարի դիրեկտիվները։

— Մեր ֆաբրիկան,—ասաց ագիտատորը,— անընդհատ հագեցվում է նորագույն մեքենաներով ու սարքավորումներով, արտադրության աշխատատար պրոցեսները և հատկապես ծանր աշխատանքները մեքենայացվում են։ Վերջին մեկ տարվա ընթացքում ֆաբրիկայում ստացվել և տեղադրվել են բուրդ սանրող, գործող դազգահներ, բրդի կարբոնիզացիայի հարմարանքներ և այլն, որոնց ռացիոնալ օգտագործման շնորհիվ աճել է արտադրանքի թողարկումը, բարձրացել աշխատանքի արտադրողականությունը։

Անցյալ տարվա 11 ամիսների ընթացքում ֆաբրիկայում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է մանարանում՝ 7,1 տոկոսով, գործվածքային ցեխում՝ 11,6 տոկոսով։ Նույն ժամանակաշրջանում սարքավորումների արտադրողականությունը մանարանում բարձրացել է 2,7 տոկոսով, իսկ գործվածքային ցեխում՝ 3,1 տոկոսով։

Ֆաբրիկան նորագույն տեխնիկայով հագեցնելու հետ միասին՝ անընդհատ բարելավվում և կատարելագործվում են նրա տեխնոլոգիական պրոցեսները։ Արտադրության նորարարները իրենց համարձակ նա-

խաձեռնություններով և խելացի առաջարկություններով նպաստում են աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Օրինակ, ինչպես գիտեք, դիմում է ագիտատորը ունկնդիրներին, մեր ցեխի մանող մեքենայի բաբիտը կարելի էր փոխել միայն մեքենան կանգնեցնելուց հետո, որը բացասաբար էր ազդում աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա։ Ցեխի ավագ վարպետ Մ. Բարսեղյանը երկար ուսումնասիրելուց հետո առաջարկեց բաբիտը փոխել մեքենան աշխատելու ժամանակ, առանց այն կանգնեցնելու։ Գործարանի գիտական խորհուրդը քննության առավ և ընդունեց նորարար Բարսեղյանի այդ առաջարկը, որպես արժեքավոր նորարարություն, որի կիրառման շնորհիվ մեր ցեխի աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 12 տոկոսով։ Կամ, երբ գործող մեքենայի ասպը կտրվում էր, մեքենան շարունակում էր դարձյալ աշխատել, որի պատճառով ստացվում էր խոտան արտադրանք։ Նորարար Բերբերյանը պատրաստեց այնպիսի մի հարմարանք, որի շնորհիվ ասպը կտրվելուն պես մեքենան կանգ է առնում, և կանխվում է խոտանը։ Այդ առաջարկի կիրառման շնորհիվ գործող ցեխում բարձրացել է



աշխատանքի արտադրողականությունը և գործվածքի որակը։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում վճռական նշանակություն ունի սոցիալիստական մրցությունը։ Սոցիալիստական մրցության շնորհիվ մեր ցեխը տարեկան պլանը, ինչպես գիտեք, իր բոլոր ցուցանիշներով կատարեց դեկտեմբերի 2-ին, հարազատ երկրին պլանից դուրս տալով 29.900 կիլոգրամ թել։ Առաջին տեսակի արտադրանքը կազմում է 95 տոկոս։ Այժմ մենք պետք է է՛լ ավելի ծավալենք սոցիալիստական՝ մրցությունը, բարձրացնենք աշխատանքի արտադրողականությունը և մեր ձեռքում ամուր պահենք ֆաբրիկայի միջցեխային փոխանցիկ դրոշը։

Ագիտատորն ունկնդիրներին տեղյակ պահելով, թե ով ինչպես է կատարում ստանձնած պարտավորությունը, միաժամանակ նրանց պատմում է եղբայրական Ադրբեջանի Կիրովաբադ քաղաքի մահուդի ֆաբրիկայի կոլեկտիվի հետ ծավալված սոցմրցության արդյունքների մասին։

Սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների ճիշտ կատարման, տեխնիկական սարքավորումների, հատկա-

պես գործվածքային դազգահների աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, սարքավորումների համար նախատեսված հիմնական և ընթացիկ նորոգումների ժամկետները կրճատելու շնորհիվ,— ասում է ագիտատորը,— ֆաբրիկան 1953 թվականին համախառն արտադրանքի պլանը կատարեց ժամկետից 3 ամիս առաջ, պլանից դուրս երկրին տալով 11,5 միլիոն ռուբլու արտադրանք, ինքնարժեքը նախատեսված 0,83 տոկոսի փոխարեն իջեցրեց 1,8 տոկոսով, որի շնորհիվ ֆաբրիկան 4 միլիոն ռուբլու արտապլանային կուտակում ունեցավ և միաժամանակ տնտեսեց 16 տոննա թել։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման մյուս միջոցը, շարունակում է ագիտատոր Սարգսյանը,— դա բանվորների հանրակրթական, արտադրական-տեխնիկական պատրաստության և կուլտուրական մակարդակի բարձրացումն է։ Մեր ֆաբրիկայի դազգահների, մեխանիզմների հզորությունը լրիվ օգտագործելու համար մենք պետք է լավ տիրապետենք տեխնիկային։ Սակայն այդ բնագավառում մեզ մոտ կան լուրջ թերություններ։ Ֆաբրիկայի բանվորներից շատերը դեռևս չունեն տեխնիկական անհրաժեշտ որակավորում և լրիվ միջնա-



կարգ կրթություն։ Այժմ խնդիրն այն է, որ բոլորս ընդգրկվենք կազմակերպված տեխնիկայի ուսուցման խմբակներում, համառ և քրտնաջան ուսման միջոցով բարձրացնենք մեր տեխնիկական գիտելիքները, արմատավորենք աշխատանքի առաջավոր փորձը, տիրապետենք ժամանակակից առաջավոր տեխնիկային և այն օգտագործենք արդյունավետ կերպով։

Աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու գործում մեծ դեր է խաղում նաև աշխատանքային ու արտադրական կարգապահությունը։ Բարձր կարգապահությունն արտադրության անընդհատ աճի, ինչպես նաև արտադրանքի որակի բարձրացման, ինքնարժեքի իջեցման պայմաններից մեկն է։

Սակայն ցեխի որոշ աշխատողներ դեռևս խախտում են աշխատանքային կարգապահությունը, որը խիստ բացասաբար է անդրադառնում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու վրա։

Զրույցի վերջում ագիտատորը նշեց մի շարք միջոցառումներ, նկատված թերություններն արագ կերպով լիկվիդացնելու համար։

---

# ՏՐԱԿՏՈՐԱՅԻՆ ԲՐԻԳԱԴԱՆ ՊԱՏՐԱՍՏ Է ԳԱՐՆԱՆԱՑԱՆԻՆ

Գ. ՄՈՎՍԻՍՅԱՆ

Հոկտեմբերյանի շրջանի Լենինյան ՄՏԿ-ի № 6 տրակտորային բրիգադայի բրիգադիր

*Երկրում հացահատիկի արտադրության հետագա ավելացման և խոպան ու խամ հողերի յուրացման մասին ՍՄԿՊ Կենտկոմի վերջերս տեղի ունեցած պլենումը ցույց տվեց՝ ՄՏԿ-ների աշխատանքը գնահատելիս ելնել ամենից առաջ բերքատվության պետական առաջադրանքի կատարումից, որ բերքը պետք է դառնա ՄՏԿ-ի աշխատանքի որակի գլխավոր չափանիշը։*

*Այդ միանգամայն ճիշտ և մոբիլիզացնող պահանջը վերաբերում է բոլոր մեխանիզատորներին, որովհետև գյուղատնտեսության հետագա վերելքի գործում գլխավոր և վճռական դերը պատկանում է մեքենա-տրակտորային կայաններին։*

*Կատարելով հարազատ Կոմունիստական պարտիայի այդ պահանջը, մեր բրիգադան*



*անում է ամեն բան, որպեսզի իր սպասարկած Արմավիր գյուղի Ա. Ժդանովի անվան կոլտնտեսությունը առաջիկա տարում բարձր բերք ստանա մշակվող բոլոր կուլտուրաներից։*

*Այժմ բրիգադան լրիվ պատրաստ է գարնան գյուղատնտեսական աշխատանքներն սկսելու համար։ Վերանորոգված են «Ստալինեց—80», ԴՏ—54, ՆԱՏ-ի և երեք ունիվերսալ նիստեմի տրակտորները, բամբակահավաք 2 մեքենա։ Բացի այդ, տրակտորային բրիգադան արդեն նորոգել և պատրաստ են 3 բամբակի և 1 հացահատիկի շարքացան մեքենա, 5 խոփանոց 4 հզոր գութաններ, 3 չիզել (հողը փխրեցնող գործիք), 1 խոտհար մեքենա, 3 կուլտիվատոր, 2 պարարտացնող-սնուցող մեքենա և բազմաթիվ այլ գործիքներ ու մեքենաներ։*

*Այս թվերը ցույց են տալիս, որ մեր բրիգադան համառ և լարված աշխատանք է կատարել գարնանացանին նախապատրաստված դիմավորելու համար։ Տրակտորների և գյուղգործիքների վերանորոգման աշխատանքներն սկսելու հենց սկզբի օրերից մեր բրիգադան սոցիալիստական մրցության մեջ մտավ 8-րդ տրակտորային բրիգադայի հետ։*

Օրերս մեր տրակտորային բրիգադայի արտադրական խորհրդակցությունում քննության առնվեց գյուղատնտեսական բոլոր կուլտուրաներից բարձր բերք ստանալու հարցը, որտեղ տրակտորիստները նոր պարտավորություններ ստանձնեցին բամբակի, հացահատիկի և մյուս կուլտուրաների մշակությունը բարելավելու և առավել բարձր բերք նվաճելու վերաբերյալ։ «Ստալինեց—80» թրթուրավոր հզոր տրակտորի առաջին հերթափոխի տրակտորիստ Ս. Սիմոնյանն ասաց.

— Մեր տրակտորային բրիգադան անցյալ տարի վատ չաշխատեց, մեր բրիգադայի կողմից սպասարկվող կոլտնտեսության դաշտերի բերքատվությունը զգալի չափով բարձրացավ։ Կոլտնտեսության միայն դրամական եկամուտը նախորդ տարվա համեմատությամբ ավելացավ մոտ 3 միլիոն ռուբլով, միաժամանակ տնտեսեցինք 5 տոննա վառելանյութ և այլն։ Բայց պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Սեպտեմբերյան և օրերս տեղի ունեցած պլենումների պատմական որոշումները մեզանից պահանջում են կրկնապատկել մեր ուժերը և ստանալ առավել բարձր բերք։ Այս պատասխանատու խնդրի իրականացման համար ես առաջարկում եմ



փոխադարձաբար օգնել Արմավիրի դաշտավարական բրիգադաներին՝ ցանքի աշխատանքները ժամանակին և բարձր որակով կատարելու համար։ Ես պարտավորվում եմ ապահովել իմ տրակտորի և ինձ հանձնարարված մյուս գյուղգործիքների անխափան և գերազանց որակի աշխատանքը։

Նույնանման պարտավորություններ ստանձնեցին տրակտորիստներ Ն. Գրիգորյանը, Ա. Կնյազյանը, Ն. Մկրտչյանը, Հ. Միրզոյանը, Ա. Մեդիկյանը և շատերը, որոնց թիվը հասնում է 17-ի։

Գործարար սոցիալիստական մրցության յուրաքանչյուր օրը նոր հաջողությունների հասցրեց տրակտորային բրիգադայի աշխատողներին։ Նրանք ժամկետից 20 օր շուտ՝ դեռ փետրվարի 10-ին ավարտեցին ինչպես տրակտորների, այնպես էլ գյուղատնտեսական մյուս գործիքների վերանորոգումը։ Երբ պետական ընդունող հանձնաժողովն ստուգում էր տրակտորների նորոգման վիճակը, արձանագրեց՝ «Վերանորոգումները կատարված են գերազանց որակով», որ բրիգադայի անձնակազմը աշխատել է շատ լավ։

ՄՏ կայանի դիրեկցիան, պարտիական ու պրոֆմիութենական կազմակերպությունները քննության ենթարկեցին սոցիալիստական

մրցության ընթացքը ՄՏ կայանի տրակտորային բրիգադներում և որոշեցին միջբրիգադային փոխանցիկ դրոշը, որը 1952 թվականից գտնվում էր տրակտորային 6-րդ բրիգադայի մեխանիզատորների մոտ, դարձյալ թողնել նրանց։

Իրենց լավագույն աշխատանքի համար մեր բրիգադայից 6 հոգի արժանացել են պատվոտախտակի, իսկ Հ. Միրզոյանի և Ա. Մեդիկյանի անունները գրանցված են ՄՏԿ-ի պատվոգրքում։

Մի քանի օր առաջ, մեր բրիգադան ստացավ ՌՍՍ—6 տիպի նոր սածիլ տնկող տրակտորաքարշ մեքենա, որը կատարելու է տասնյակ կոլտնտեսականների աշխատանք։ Բոլոր տրակտորիստներն արդեն ծանոթացել են այդ մեքենայի հետ, ուսումնասիրել են նրա առավելությունները և այդ մասին պատմել Արմավիրի կոլտնտեսականներին։

Մեր բրիգադան այս տարի Արմավիրի կոլտնտեսականների հետ միասին մշակելու է 286 հեկտար բամբակենու, 30 հեկտար խորդենու պլանտացիա, 42 հեկտար բոստան-բանջարանոցային կուլտուրաների, 90 հեկտար առվույտի, 220 հեկտար հացահատիկի ցանք և ավելի քան 150 հեկտար խաղողի ու պտղատու այգիների միջտարածություններ։



Շուտով տրակտորային բրիգադան սկսելու է գարնան-դաշտային աշխատանքները։ Արդեն կոլտնտեսականները սկսել են վարի համար նախապատրաստել դաշտերը, նրանք հավաքում են բամբակենու ցողունները, դաշտ են տեղափոխում հանքային ու տեղական պարարտանյութեր, վերանորոգում են ճանապարհներն ու կամուրջները։ Մի քանի օրից հետո տրակտորային բրիգադայի տրակտորիստները դաշտ դուրս կգան վարելու և ցանելու գարնանացան կուլտուրաների առաջին սերմերը։

Տրակտորային բրիգադան, որը սոցիալիստական մրցության նոր պայմանագիր է կնքել Մրգաշատ գյուղում աշխատող նույն ՄՏ կայանի տրակտորային 8-րդ բրիգադայի աշխատողների հետ, պարտավորվել է 1954 թվականին բամբակի յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը հասցնել 30 ցենտների, զգալի չափով գերակատարել նաև մյուս կուլտուրաների և հատկապես բանջարա-բոստանային կուլտուրաների բերքատվության պլանները։ Բոլոր ջանքերը գործադրել պարտիայի և կառավարության կողմից ընդունված պատմական որոշումները անթերի կատարելու, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության գործում ճշտակի վերելք ստեղծելու համար։

---

## ՉՈՐՍ ՏԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՐՏԱՔԻՆ ԳՈՐԾԵՐԻ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԲԵՌԼԻՆԻ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

Մի խումբ ընթերցողներ դիմել են խմբագրությանը հետևյալ հարցով. «Ինչ կատարվեց Բեռլինի խորհրդակցությունում»: Տպագրում ենք պատասխան այդ հարցին:

*Չորս տերությունների՝ Սովետական Միության, Անգլիայի, ԱՄՆ-ի և Ֆրանսիայի արտաքին գործերի մինիստրների Բեռլինի խորհրդակցությունը, որը սկսվեց 1954 թվականի հունվարի 25-ին և ավարտվեց փետրվարի 18-ին, Սովետական Միության առաջարկությամբ ընդունեց հետևյալ օրակարգը.*

*1. Միջազգային հարաբերությունների լարվածությունը նվազեցնելու միջոցառումների և Ֆրանսիայի, Անգլիայի, ԱՄՆ-ի, Սովետական Միության ու Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի արտաքին գործերի մինիստրների խորհրդակցություն հրավիրելու մասին.*



*2. Գերմանիայի հարցը և Եվրոպայի անվտանգությունն ապահովելու խնդիրները.*

*3. Ավստրիական պետական պայմանագրի մասին.*

*Խորհրդակցությունը ամենից ավելի մեծ ուշադրություն նվիրեց գերմանական հարցին, որը հետպատերազմյան չլուծված միջազգային պրոբլեմներից գլխավորն է։ Այս հարցի քննարկումը նպաստեց խորհրդակցությունում ներկայացված երկրների դիրքերի ավելի ճիշտ ըմբռնմանը։*

*Խորհրդակցությունը ցույց տվեց, որ Սովետական Միությունը շարունակում է մնալ այն դիրքում, որ Եվրոպայում խաղաղության ու անվտանգության ապահովման խնդիրները պահանջում են չթույլատրել գերմանական միլիտարիզմի վերածնումը։ ՍՍՌՄ-ի այդ դիրքը լիովին համապատասխանում է պատերազմի ընթացքում և նրանից հետո մեծ տերությունների միջև գերմանական հարցի վերաբերյալ կնքված համաձայնագրերին։ Եթե արևմտյան երեք տերությունները համաձայնեին, որ գերմանական միլիտարիզմի վերականգնումը անթույլատրելի է, հնարավոր կլիներ գերմանական պրոբլեմին վերաբերող մնացած հարցերը հեշտորեն լուծել։ Սակայն բանն այն է, որ*

ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի կառավարությունները կանգնել են ճիշտ հակառակ ուղու վրա և ի խախտումն իրենց ստանձնած միջազգային պարտավորությունների, վերածնում են Արևմտյան Գերմանիայի զինված ուժերը՝ պատերազմի վտանգ ստեղծելով Եվրոպայում և՛ ոչ միայն Եվրոպայում։

Բեռլինի խորհրդակցությունը ցույց տվեց, որ արևմտյան տերությունները կամենում են «օրինականացնել» Բոննի և Փարիզի համաձայնագրերը, որպիսիք նրանք կնքել են 1952 թվականի մայիսին։ Իսկ ինչպես հայտնի է, Փարիզի պայմանագիրը կնքվել է եվրոպական վեց պետությունների միջև այսպես կոչված «Եվրոպական պաշտպանական միավորում» անվան տակ և որի ուժով կազմակերպվում է «Եվրոպական բանակ»՝ Ֆրանսիայի, Իտալիայի, Բելգիայի, Հոլանդիայի, Լյուքսեմբուրգի և Արևմտյան Գերմանիայի զինված ուժերից։

«Եվրոպական բանակ» ստեղծելու ամերիկա-անգլիական պլանը, որին հնազանդաբար ենթարկվում է Ֆրանսիայի այժմյան կառավարությունը, ոչ այլ ինչ է, քան գերմանական միլիտարիզմի վերականգնման լեգալացում, որն իր սուր ծայրով ուղղված է ՍՍՌՄ-ի և ժողովրդա-դեմոկրատական եր-



կըրների, ինչպես նաև Գերմանիայի հարևան մյուս երկրների դեմ։

Բոննի պայմանագրով, որը կնքվել է ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի և Արևմտյան Գերմանիայի միջև, Արևմտյան Գերմանիան տասնյակ տարիներով դրվում է ամերիկա-անգլիական բլոկի տնօրինության տակ, որպես ռազմադաշտ ընդդեմ ՍՍՌՄ-ի և ժողովրդա-դեմոկրատական պետությունների։ Ըստ արևմտյան երեք տերությունների հաշիվների վերականգնված Գերմանիան պետք է մտնի «Եվրոպական պաշտպանական միավորման» մեջ և Բոննի պայմանագրի ուժով էլ պետք է ծառայի ամերիկյան իմպերիալիզմի բացահայտ ագրեսիվ նպատակներին։

Գերմանիայի միասնության վերականգնման հարցը քննարկելիս, ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի ներկայացուցիչները ձգտում էին իրենց դիրքը փաթաթել սովետական դելեգացիային և Գերմանիայի միավորումը վերածել Արևմտյան Գերմանիայում հաստատված ռևանշիստների ռեակցիոն ռեժիմը առանց այլևայլության Արևելյան Գերմանիային պարտադրելուն, կոպիտ կերպով անտեսելով գերմանական ժողովրդի շահերը։

Իդենը, Դալլեսը և Բիդոն առաջարկում էին Գերմանիայում անցկացնել «ազատ

ընտրություններ», այդ գործը հանձնելով օկուպացիոն իշխանություններին։

Նրանք հրաժարվեցին Գերմանիայում ընտրություններ անցկացնելը Գերմանիային թողնելու, ինչպես նաև մինչև համագերմանական ընտրությունները Գերմանիայից բոլոր օկուպացիոն զորքերը, բացառությամբ խիստ սահմանափակ կոնտինգենտի, դուրս հանելու սովետական առաջարկությունը ընդունելուց։

ԱՄՆ-ը, Անգլիան և Ֆրանսիան հրաժարվեցին քննարկել Գերմանիայի երկու մասերի՝ պատերազմի հետևանքների հետ կապված ֆինանսա-տնտեսական պարտավորությունները թեթևացնելու մասին սովետական առաջարկությունները, պնդելով, որ խոսքը վերաբերում է այդ միջոցառումը Արևմտյան Գերմանիայի նկատմամբ կիրառելուն, քանի որ Արևելյան Գերմանիայի նկատմամբ այն արդեն իրականացված է ՍՍՌՄ-ի կողմից։

Հենց նրա համար, որ ԱՄՆ-ը, Անգլիան և Ֆրանսիան չեն ցանկանում հրաժարվել գերմանական միլիտարիզմի վերածնման պլանից, բացառում են Արևմտյան և Արևելյան Գերմանիան միասնական դեմոկրատական պետության մեջ միավորելու բուն հնարավորությունը՝ հրաժարվեցին համաձայնվել



խաղաղության և գերմանական ժողովրդի շահերից բխող սովետական դելեգացիայի կոնստրուկտիվ առաջարկությունները ընդունել։

ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի ներկայացուցիչները չընդունեցին սովետական առաջարկությունը՝ լսելու գերմանական ժողովրդի ներկայացուցիչներին, իմանալու թե ինչ է մտածում գերմանական ժողովուրդը Գերմանիայի վերամիավորման խնդիրների մասին։ Նման մոտեցումը հարցին, ինքնին խոսում է այն մասին, որ գերմանական հարցով լրջորեն զբաղվելը չէր մտնում Արևմըտյան երեք տերությունների հաշիվների մեջ։

Չներկայացնելով հաշտության պայմանագրի իրենց նախագիծը, ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի արտաքին գործերի մինիստրները հրաժարվեցին քննարկել Գերմանիայի հետ կնքվելիք հաշտության պայմանագրի սովետական նախագիծը։ Դրա հետ մեկտեղ նրանք հրաժարվեցին քննարկել Արևելյան և Արևմտյան Գերմանիայի պառլամենտների ներկայացուցիչներից համագերմանական ժամանակավոր կառավարություն կազմելու հարցը, ինչպես նաև Գերմանիայի երկու մասերի միջև տնտեսական և ադմինիստրա-

տիվ կապերի բարելավման և գերմանական ազգային կուլտուրայի զարգացման համար պայմանները հեշտացնելու հարցերի գծով համագերմանական կոմիտեներ ստեղծելու սովետական առաջարկը։ ԱՄՆ-ը, Անգլիան և Ֆրանսիան հրաժարվեցին Գերմանիայի երկու մասերի մերձեցման ուղղությամբ որևէ պրակտիկ քայլի դիմելու։

Ավստրիական պետական պայմանագրի հարցը քննարկելիս սովետական դելեգացիան առաջարկեց, որպեսզի Ավստրիան իր վրա պարտավորություն վերցնի չմասնակցել որևէ ռազմական խմբավորման՝ ուղղված այն պետություններից մեկն ու մեկի դեմ, որոնք մասնակցել են հիտլերիզմի դեմ մղված պատերազմին և Ավստրիայի ազատագրմանը և Ավստրիայի տերիտորիան չթույլատրելի օտարերկրյա ռազմական բազաներ կառուցելու համար։ Ավստրիական հարցի վերաբերյալ սովետական մյուս առաջարկությունն այն է, որպեսզի մինչև Գերմանիայի հետ հաշտության պայմանագիր կնքելը Ավստրիայի տերիտորիայում մնան օտարերկրյա՝ չորս պետությունների զորամասերը, Ավստրիայից այդ զորամասերի դուրս բերման հարցը ոչ ուշ, քան 1955 թվականին նորից քննարկվելու պայմանով։



Սովետական դելեգացիան այդ առաջարկություններն արեց ելնելով «եվրոպական պաշտպանական միավորում» ստեղծելու վերաբերյալ Փարիզի համաձայնագրի ստորագրման, Արևմտյան Գերմանիայի վերառազմականացման աճող սպառնալիքի և Ավստրիան ագրեսիվ ռազմական պլանների կողմից անշլյուսի ենթարկելու վտանգի փաստից։ Սակայն ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի ներկայացուցիչները հրաժարվեցին ընդունել նաև սովետական այդ միանգամայն արդարացի առաջարկությունները։

Այսպիսով, Արևմտյան երեք տերությունների գրաված դիրքը անհնարին դարձրեց Բեռլինի խորհրդակցությունում լուծել ինչպես գերմանական, այնպես էլ ավստրիական պրոբլեմի հետ կապված հրատապ խնդիրները։

Եվրոպական պետությունների ռազմական խմբավորումներ ստեղծելու պլաններին Բեռլինի խորհրդակցությունում Սովետական Միությունը հակադրեց Եվրոպայի բոլոր երկրների կոլեկտիվ անվտանգությունն ապահովող իր քաղաքականությունը։ Սովետական Միությունը մտցրեց Եվրոպայի անվտանգության վերաբերյալ իր առաջարկները և համաեվրոպական պայմանագրի նախա-

գիծ, որոնց ընդունումը կհանգեցնի Գերմանիայի չեզոքացմանը և Եվրոպայի բոլոր երկրների համագործակցությանը՝ անկախ նրանց հասարակական կարգի տարբերություններից։ Սովետական այս առաջարկությունները ևս մերժվեցին ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի արտաքին գործերի մինիստրների կողմից։

Քննարկելով միջազգային լարվածությունը նվազեցնելու միջոցառումների հարցը, չորս երկրների արտաքին գործերի մինիստրները համաձայնության եկան, որ կորեական հարցի խաղաղ կարգավորմանը հասնելու համար 1954 թվականի ապրիլի 26-ին, Ժնևում հրավիրվելու է ՍՍՌՄ-ի, ԱՄՆ-ի, Ֆրանսիայի, Անգլիայի, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Կորեական Ռեսպուբլիկայի, Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայի և մյուս այն երկրների ներկայացուցիչների խորհրդակցություն, որոնց զինված ուժերը մասնակցել են Կորեայում մղված պատերազմական գործողություններին։ Արտաքին գործերի մինիստրները համաձայնվեցին այդ խորհրդակցությունում շահագրգռված պետությունների մասնակցությամբ քննարկել նաև



Հնդկաչինում խաղաղությունը վերականգնելու հարցը։

Չորս տերությունների արտաքին գործերի մինիստրները միաժամանակ պարտավորվեցին, որ միջոցներ ձեռք կառնեն նպաստելու զինաթափման կամ, համենայն դեպս, սպառազինությունների զգալի կրճատման պրոբլեմի հաջող լուծմանը։

Ընկեր Մոլոտովը մարտի 11-ին իր ընտրողների ժողովում ասաց,— Բեռլինի վերջերս տեղի ունեցած խորհրդակցությունը վերջապես ընդհատեց մեծ տերությունների խորհրդակցությունների այն տևական ընդմիջումը, որ շարունակվում էր վերջին մի քանի տարիներս։ Մյուս կողմից հենց Բեռլինի խորհրդակցությունը կարևոր քայլ արեց, անհրաժեշտ համարելով Ժնևի խորհրդակցության հրավիրումը ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի, Սովետական Միության և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի ներկայացուցիչների կազմով, որոնք մյուս պետությունների ներկայացուցիչների հետ միասին պետք է քննարկեն ինչպես անավարտ մնացած կորեական հարցը, այնպես էլ Հնդկաչինում խաղաղությունը վերականգնելու հարցը, որի ժողովուրդը տևական

պայքար է մղում իր ազատության և ազգային իրավունքների համար։

Սովետական մարդիկ գոհունակությամբ են նշում, այն հանգամանքը, որ այժմ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան իր օրինական տեղը կգրավի խորհրդակցությունում մյուս մեծ տերությունների կողքին։

Բեռլինի խորհրդակցության ամբողջ ընթացքը ցույց տվեց, որ Սովետական կառավարության միջոցառումները նպատակ ունեն նվազեցնել միջազգային հարաբերությունների լարվածությունը, ամրապնդել խաղաղության գործը։

Բեռլինի խորհրդակցության արդյունքները վկայում են խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի լագերի միջազգային դիրքի ամրապնդումը։

Դոցենտ Ս.Գ. ԵՍԱՅԱՆ

---

## ՏԵՂԵԿԱՏՈՒ ԲԱԺԻՆ

ԷՄԲԱՐԳՈ— իսպաներեն բառ է, որը բառացիորեն նշանակում է՝ արգելք, կալանք։

Էմբարգո սահմանել՝ այդ նշանակում է, որ պետական իշխանությունը արգելում է որևէ երկիր ապրանք, ոսկի և այլ արժեքներ արտահանել կամ որևէ երկրից ներմուծել։ Էմբարգոն կարող է կիրառվել նաև գույքի վրա կալանք դնելով, օրինակ՝ կալանք դնել օտարերկրյա պետության պատկանող նավերի վրա, կամ արգելել ուրիշ երկրների նավերին մտնելու իր երկրի նավահանգիստները և այլն։

Իմպերիալիստական պետությունների ագրեսիվ քաղաքականության կիրառման գործում էմբարգոն գրավում է գլխավոր տեղերից մեկը։ Խոշոր իմպերիալիստական պետությունների ձեռքում էմբարգոն մի միջոց է ուրիշ երկրների վրա տնտեսական ու ֆինանսական ճնշում գործադրելու, նրանց տնտեսությունը քայքայելու և ստրկացնելու համար։ Իմպերիալիստական պետությունները էմբարգոն հաճախ օգտագործում են որպես հակասովետական քաղաքականության գործիք։ Այսպես եղավ, օրինակ, 1933 թվականին, երբ Մեծ Բրիտանիան էմբարգո դրեց սովետական իմպորտի վրա։ Երկրորդ համաշխարհային պատե-

*րազմից հետո էմբարգոն կազմեց այն տնտեսական բլոկադայի բաղկացուցիչ տարրը, որ կիրառում են ԱՄՆ-ը և մյուս իմպերիալիստական պետությունները Սովետական Միության, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և ժողովրդական դեմոկրատական երկրների դեմ։ Փորձելով իրագործել իրենց ինտերվենցիան Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայի դեմ, ԱՄՆ-ը հասավ նրան, որ 1951 թվականի մայիսին ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեան ապօրինի բանաձև ընդունեց Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայի մատակարարումների վրա էմբարգո դնելու մասին։ Այդ ապօրինի բանաձևը միջազգային իրավունքի տարրական նորմաների և սկզբունքների կոպիտ խախտում էր ամերիկյան և մյուս իմպերիալիստների կողմից։*

*Ի տարբերություն ԱՄՆ-ի ագրեսիվ տնտեսական քաղաքականության, Սովետական Միությունն իր խաղաղասիրական քաղաքականությանը համապատասխան՝ շարունակ ձգտում է պահպանել ու ընդլայնել առևտրական կապերը բոլոր այն երկրների հետ, որոնք ցանկանում են մեզ հետ առևտուր անել փոխադարձորեն շահավետ պայմաններով։*

*Տարեցտարի ընդլայնվում են Սովետական Միության և դեմոկրատական լագերի երկրների առևտրական կապերը։*

*Վերջին ժամանակներս զանազան կապիտալիստա-*



*կան երկրների առևտրական կազմակերպությունները և ֆիրմաները մեծ շահագրգռվածություն են հանդես բերում սովետական արտաքին առևտրի կազմակերպությունների հետ առևտրական գործարքներ կնքելու գործում։ Վերջերս տեղի ունեցած բանակցությունների հետևանքով սովետական արտաքին առևտրի կազմակերպությունները պատվերներ տվեցին անգլիական ֆիրմաներին և համապատասխան պայմանագիր կնքեցին։ Բացի դրանից, սովետական արտաքին առևտրի կազմակերպությունները և անգլիական համապատասխան ֆիրմաները սկզբունքորեն համաձայնության եկան հետագա պատվերների շուրջը։*

*Սակայն այժմ էլ, ինչպես երևում է մամուլի վերջին հաղորդագրություններից, անգլիական ֆիրմաների ներկայացուցիչները երկյուղ են կրում, թե իրենց կառավարությունը էմբարգո կդնի պայմանագրի համաձայն Սովետական Միություն արտահանվող ապրանքների վրա։*

*ԱՆՇԼՅՈՒՍ— գերմաներեն բառ է, որը նշանակում է միացում, իմպերիալիստական Գերմանիայի կողմից Ավստրիայի հափշտակման քաղաքականություն։ Անշլյուսը առաջացել է առաջին իմպերիալիստական պատերազմի տարիներին (1914—1918 թվերին)։ Երբ տեղի ունեցավ Ավստրո-Հունգարական միապետության*

անկումը, գերմանական իմպերիալիստները պահանջեցին Ավստրիան միացնել Գերմանիային, որի համար նրանք մշակեցին մի շարք նախագծեր Ավստրիան Գերմանիային միացնելու մասին։

Առաջին իմպերիալիստական պատերազմի ավարտումից հետո, Ֆրանսիայի պահանջով հաշտության վերսալյան պայմանագրի մեջ հատուկ կետ գրվեց գերմանական անշլյուսը Ավստրիայի նկատմամբ վերացնելու, արգելելու մասին։ 1933 թվականին, երբ Գերմանիայում հաստատվեց ֆաշիստական դիկտատուրա, հիտլերականները պահանջեցին անշլյուսի ենթարկել Ավստրիան, այն բռնի կերպով միացնել ֆաշիստական Գերմանիային։ Գերմանական ագրեսորները օգտվելով ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի թողտվությունից և գաղտնի օգնությունից, 1938 թվականին զինված ուժով ներխուժեցին Ավստրիա և գրավեցին այն։

Սովետական կառավարությունը բողոքեց զավթողական այդ քաղաքականության դեմ և միաժամանակ պահանջեց Անգլիայի, ԱՄՆ-ի և Ֆրանսիայի կառավարություններից՝ պայքարի կոլեկտիվ միջոցներ ձեռք առնել գերմանական ագրեսորների նկատմամբ։ Անգլիայի կառավարությունը դեմ դուրս գալով Սովետական կառավարության առաջարկին, 1938 թվի ապրիլին ճանաչեց Գերմանիայի անշլյուսը Ավստրիայի նկատ-



մամբ, իսկ ԱՄՆ-ի և Ֆրանսիայի կառավարությունները նույնիսկ չպատասխանեցին Սովետական կառավարության բողոքին։

Ֆաշիստական Գերմանիան օգտագործելով Ավստրիան, որպես պլացդարմ, սկսեց զարգացնել զավթողական պատերազմական գործողությունները ընդդեմ Եվրոպայի խաղաղասեր ժողովուրդների։

1943 թվականի հոկտեմբերին, Մոսկվայում կայացած ՍՍՌՄ-ի, ԱՄՆ-ի, Անգլիայի արտաքին գործերի մինիստրների կոնֆերանսը դեկլարացիայով չեղյալ հայտարարեց Գերմանիայի 1938 թվականի մարտի 15-ի անշլյուսը Ավստրիայի նկատմամբ։

Սովետական Միության Զինված Ուժերը ջախջախելով ֆաշիստական հորդաներին, 1945 թվականի ապրիլին ազատագրեցին Ավստրիան։ Սովետական Միության շնորհիվ ավստրիական ժողովրդի համար ստեղծվեց ինքնուրույն գոյության և ազատ դեմոկրատական կյանք վարելու լայն հնարավորություն։ Սակայն ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի ռեակցիոն կառավարողների հանցանքով մինչև հիմա էլ չի լուծվում Ավստրիայի հետ պետական պայմանագիր կնքելու հարցը, և չի վերացվում Արևմտյան Գերմանիայի կողմից Ավստրիային անշլյուսի ենթարկելու վտանգը։

Ընկեր Մոլոտովը վերջերս տեղի ունեցած չորս տերությունների Բեռլինի խորհրդակցությունում նշեց, որ ներկայումս աճում են այն ուժերը, որոնք ձգտում են





արագացնել գերմանական միլիտարիզմի վերականգնումը Արևմտյան Գերմանիայում և դա օգտագործել անշլյուսի նոր պլանների իրականացման համար։

Խաղաղասեր ժողովուրդները, որոնց ավանգարդում ընթանում է Սովետական Միությունը, պայքարում են Ավստրիային անշլյուսի ենթարկելու իմպերիալիստական պլանների դեմ։

---


Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

**Отдел Пропаганды и агитации ЦК КП Армении**

№ 6 1954 г.

**БЛОКНОТ АГИТАТОРА**

*ՎՖ 09301* *Պատվեր 267* *Տիրաժ 8.250*

---

*Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան Կնունյանցի № 8, 1954 թ., գինը 50 կոպ.։*